ՍԻՄՈՆ ՉԷՕՄԼԷՔՃԵԱՆ

# ԱՌԱՋՆՈՐԴ
# ՎԱՃԱՌԱԿԱՆԱՑ
ԿԱՄ
# ՏԱՐԵՐՔ
# ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ԳԻՏՈՒԹԵԱՆ

*Ուսումնասիրութիւնք վաճառականութեան ամէն ճիւղերուն վրայ. — Առեւտրական Օրէնսգիտութիւն եւ Աշխարհագրութիւն. — Թղթակցութիւն Հայ. Տաճկ. Գաղ. եւ Անգլ. լեզուներով. — Արհեստից եւ արհեստական նոր գիւտերու վրայ ծանօթութիւններ. — Առեւտրական, սակարանական եւ պանքայի հաշիւներ եւայլն.*

Հատոր Ա. — Տետր Ա.

Բ. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐ. ՆՇԱՆ Կ. ՊԷՐՊԷՐԵԱՆ
—
1900

**ԳԻՆ**

**12 Տետրի՝ ղրուշ 12 ԿԱՆԽԻԿ**

*Գաւառաց համար՝ իբր թղթի ծախք՝ 3 ղրուշ աւելի*

**Հասցէ**

**ՍԻՄՕՆ ՔԷՕՄԻՒՐՃԵԱՆ**

Ի խմբագրատուն «Բիւզանդիոն» Հայաթերթի

**Պապը Ալի ճատտէսի թիւ 23—25 Կ. Պոլիս**

---

*ԱՆՀՐԱԺԵՇՏ*

Ամէն վաճառականի, գրագրի, ուսանողի եւայլն.

معارف نظارت جليله‌سنك ۳۰۳ نومرولى و فى ۱٦ تشرين‌اول
سنه ۳۱٦ تاريخلو رخصتنامه‌سيله طبع اولنمشدر

# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

Այս հրատարակութեան նպատակն է ըստ կարի ուսումնասիրել բոլոր այն խնդիրները, որք Առեւտրական գիտութիւնը կը կազմեն եւ անմիջական կիրառութիւն մը կամ գործնական հանգամանք մ'ունին։

*Մեր ծրագիրն է.* — Վաճառականութեան նպատակը, սահմանն ու դերը բացատրել, Թուրքիոյ առեւտրական օրէնքները ծանօթացնել կամ յիշեցնել եւ տեղեկութիւններ տալ Ֆրանսական, Անգլիական եւ Գերմանական այն օրէնքներու վրայ, որոց անմիջական պէտք կրնան ունենալ նոյն երկիրներու հետ առեւտրական յարաբերութիւններ ունեցող անձերը, տեղական արտադրութեանց համար արտածումի նորանոր հրապարակներ ցոյց տալ, պզտիկ դրամագլուխներու շահագործութեան եղանակները մատնանիշել, արհեստներու պէտքն ու օգտակարութիւնը շեշտել. առեւտրական ձեռներէցութեան ոգին մշակել եւ գործի կեանքը ճանչցնել այն ուսանողներուն, որք առուտուրի ասպարէզը մտնել կը պատրաստուին, *էսնաֆ* դասակարգին ծանօթացնել ու բացատրել այն եւրոպական նոր գիւտերը, որք վերաբերութիւն ունին մեր երկրին մէջ գործածուած արհեստներուն հետ եւ անոնց յառաջդիմութեան կրնան նպաստել, առեւտրական թղթակցութեան ընտիր նմոյշներ տալ հայ. տաճկ. գաղ. եւ անգլ. լեզուներով, վաճառականութեան ամէն ճիւղերուն վրայ ուսումնասիրութիւններ կատարել եւ առեւտրական, սակարանական եւ պանքայի հարցերու վրայ խօսիլ։

Կը սիրենք յուսալ թէ մեր այս ծրագիր պիտի կրնայ համեստ ծառայութիւն մը մատուցանել առեւտրով զբաղողներուն եւ առեւտուրի պատրաստուողներուն։

ՍԻՄՈՆ ՉԷՕՄԼԷՔՃԵԱՆ

# ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԱՐՈՒԵՍՏԸ

[Լիոնի Առեւտրական Բարձրագոյն Վարժարանի բրոֆէսէօր եւ նոյն քաղաքի Առեւտրական դատարանի քննիչ-հաշուակալ Մ. Ժ. Մարշալ, որուն պարզած էինք այս հրատարակութեան ծրագիրը, հաճեցաւ հետեւեալ տողերը գրել մեզ։]

*Վաճառականութիւնն հետզհետէ կը միտի իր սեփական կարեւոր տեղը գրաւել ազգաց մէջ։ Այսօր ամէն երկրի մէջ ստուարաթիւ անձեր վաճառականութեան կը պարապին թէ՛ իբր* **բադրոն** *եւ թէ իբր առեւտրական պաշտօնեայ։ Վաճառականութեան մատուցած ծառայութիւններէն ամէ՛ն մարդ կ՚օգտուի։ Ա՛ն է որ ժողովրդոց տրամադրութեան ներքեւ կը դնէ իրենց պէտք ունեցած ամէ՛ն նիւթերը, որոնցմէ ուզած տեսակով ու քանակութեամբ կրնան ձեռք բերել համեմատապէս չափաւոր գիներով։ Վաճառականութի՛ւնն է նաեւ որ երկրի մը զարգացման ու հարստացման պատճառ կ՚ըլլայ։ Ազգ մը՝ որքան աւելի ոյժ տայ վաճառականութեան՝ նոյնքան հարուստ կ՚ըլլայ։*

*Հաղորդակցութեան միջոցներն օր օրի կ՚աւելնան, ճարտարարուեստը կը զարգանայ եւ կատաղի մրցումին պատճառաւ, որ ամէ՛ն առեւտուրի մէջ գոյութիւն ունի, շահերն հետզհետէ կը սահմանափակուին, կը քիչնան։ Վա՛յ անոր որ սխալ քայլեր կ՚առնէ եւ իր մրցակիցներէն ետ կը մնայ։ Այս տնտեսական բուռն պայքարին մէջ պատուաւոր ու շահաւոր տեղ մը բռնել կարենալու համար արուեստին կատարեալ գիտակցութիւնն ունենալու է, որուն համար շատ բաներ անհրաժեշտ են. — Ծանօթութիւն ապրանաց վրայ, արտադրութեան տեղերուն վրայ, փոխադրութեան ու ապահովութեան միջոցներուն վրայ, վաճառման եղանակներուն ու դիւրութիւններուն վրայ, գնողներուն տրուելիք պայմանաժամերուն վրայ, վարկերու վրայ, դրամատուննե-*

*րու պայմաններուն վրայ եւ վերջապէս առեւտրական հաշուակալութեան եւ թղթակցութեան վրայ ։ Վաճառական մը անշուշտ շա՛տ բան կը սորվի գործնականին մէջ, որ ատեն մը կը բաւէր, բայց հիմակ անբաւական է ։ Կառավարութիւնք լաւ ըմբռնած են այս կէտը, եւ Ֆրանսա, Գերմանիա, Անգլիա, Իտալիա, Զուիցերիա եւ Միացեալ Նահանգներն առեւտրական բարձրագոյն վարժարաններ հիմնած են, ուր ապագայ վաճառականը տեսական կերպով կը սորվի, ի՛նչ որ յետոյ պիտի կատարելագործէ գործնականին մէջ ։ Այս տեսակէտով մեծ ծառայութիւն կը մատուցուի վաճառականներուն՝ անոնց տրամադրութեան ներքեւ դնելով գիրք մը, ուր կարելի պիտի ըլլայ գտնել ամէն օրուան առեւտուրին մէջ պէտք եղած բազմաթիւ տեղեկութիւններն ու ծանօթութիւնները ։*

*Ա՛յս է նպատակը, զոր առաջադրած է... Սիմոն Չէօմլէքճեան ։ Կը յուսանք թէ պիտի գնահատուի ներկայացուած գործը ։*

Ժ. ՄԱՐՇԱԼ

## ՀԱՐՑՈՒՄՆԵՐ

1. —*Ապրանք մը պիտի ծախենք հարիւրին* 16, 3 *եւ* 2 *զեղչով ։ Գտնել միակ զեղչ մը, որ հաւասարի այս երեք յաջորդական զեղչերուն ։*

2. —*Ապրանք մը* 250 *ղրուշ արժած է մեզ ։ Կ'ուզենք* 10 % *շահով ծախել ։ Ի՞նչ պիտի աւելցնենք գինին վրայ ։*

3. —*Պետրոս Լէֆ. վաճառատուն մ'ունի ։ Կ'ընկերանայ Պօղոս Էֆ.ի հետ եւ նոր ընկերութեան կը յանձնէ իր վաճառատան գոյքը ։ Այս հաշիւն ի՞նչպէս անցընել Պետրոս Լէֆ.ի տետրակին մէջ եւ ի՛նչպէս՝ Պօղոս եւ Պետրոս ընկերութեան տետրակներուն մէջ ։*

4. —*Երկիր մը՝ տնտեսական տեսակէտով՝ օգուտ կը քաղէ՞ իր պեղչի սակին անկումէն թէ ո՛չ եւ ինչո՞ւ ։*

# ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒԹԵԱՆ

## Նպատակը, Սահմանն ու Դերը

*Առեւտրական Օրինագրքի տրամադրութեամբ «Վաճառական են անոնք, որ առեւտուրն իրենց սովորական զբաղում ըրած են»։ Արդ, աշխատութեան բաժանումի վրայ հիմնուած ամէն քաղաքակրթութեան մէջ, անհատին բոլոր տնտեսական գործերն առեւտրական գործառնութիւններ են։ Անհատը կ'արտադրէ ծախելու համար, կամ ծառայութիւններ կը մատուցանէ վարձատրութեան մը փոխարէն։ Ամէն վայրկեան ծախող ու գնող է միանգամայն։ Պիտի ըսէք թէ երկրագործն ինչո՞ւ վաճառական չի նկատուիր։ — Ատիկա մեր ընկերային կազմակերպութեան մէջ նախապաշարումներու գոյութիւնը կ'ապացուցանէ լոկ։*

*Վաճառականութեան նպատակն է ցրուած ապրանքները կեդրոնացնել, համախմբել եւ յետոյ պէտք ունեցողներուն բաժնել։ Ենթադրե՛նք թէ զգեստի մը պէտք ունիք։ Անշուշտ ուղղակի բուրդ արտադրողին չէք դիմեր կերպաս շինելու եւ դերձակին յանձնելու համար։ Վաճառականներ կան որ Ֆրանսայէն, Սպանիայէն եւ Թուրքիայէն կամ Աւստրալիայէն մեծաքանակ բուրդ կը գնեն եւ ճարտարարուեստին կը յանձնեն կերպաս շինելու համար։ Ձեռքէ ձեռք վերջապէս կը հասնի ձեր դերձակին խանութն ուրտեղ կրնաք ուզած տեսակնիդ ընտրել։*

*Վաճառականութիւնն երկու տեսակ գործառնութիւններ ունի. —* **կը համախմբէ, կը բաժնէ** *։ Ըսողներ կան թէ վաճառականը կը հարստանայ ի վնաս արտադրիչին, ուրկէ աժան կը գնէ, եւ ի վնաս սպառողին, որուն սուղ կը ծախէ։ Այս դիտողութիւն ճիշտ չէ՛։ Արտադրողն ու սպառողն ի՞նչպէս պի-*

տի կրնային յարաբերութիւն ունենալ իրարու հետ, առանց վաճառականին։ Վաճառականութի՛ւնն է որ հրապարակներ կը բանայ եւ յարաբերութիւններ կ'ստեղծէ։ Անշուշտ շահ մը պիտի առնէ սա պարզ պատճառաւ թէ ամէն ծառայութիւն պէտք է վարձատրուի։ Եթէ տնտեսական ծառայութիւն մը անվարձ մնայ, գոյութեան իրաւունքը կը կորսնցնէ։ Ճարտարարուեստին ու վաճառականութեան անջատումն աշխատութեան բաժանումի մէկ հետեւանքն է լոկ։ Վաճառականութիւնը պէտքեր կը փնտռէ և կը մղէ, կը քաջալերէ արտադրողներն որ խնդրուած նիւթերը պատրաստեն։ Ու ո՛չ միայն պէտքեր կը փնտռէ, այլ կ'ստեղծէ՛ ալ։ Այս կրկին գործին համար է որ տնտեսական զարգացման ու յառաջդիմութեան մեծ գործիչը կը համարուի անիկա։ Վաճառականութիւնը դրամագլուխներու շրջաբերութիւնը կը փութացնէ, բարոյական ազդեցութիւն մը կը գործէ՝ առեւտրական պայմանագրութիւններն անվրէպ գործադրել տալով, ժողովուրդներն իրարու կը մօտեցնէ, թշնամիները փոխադարձ յաճախորդներու կը փոխէ, վաճառականներուն սովորութիւններն ու լեզուն կը միօրինակէ, եւ աշխարհի բոլոր կէտերուն միջեւ իրական համերաշխութիւն մը կը հաստատէ։ Օդասլաց մ'է, որ անջրպետին կը տիրէ, բախումները կը մեղմէ ու ժամանակը կը կանխէ։ Վաճառականութիւնը գիտութի՛ւն մ'է, եւ դժուար գիտութիւն մը, որ իր օրէնքները, պայմաններն ունի, ասպարէզ մ'է, ուր յաջողելու համար լոկ դրամը չի՛ բաւեր, եւ պաշտօն մ'է, որուն պատասխանատուութիւնն անմիջական է եւ անողոք։ Եթէ վաճառական մը իր հաշիւններուն, ենթադրութիւններուն մէջ սխալի, կորսուած է, իսկ եթէ գիտակցութեամբ ու տրամաբանօրէն գործէ, կը շահի։

# ԾՈՎԱՅԻՆ ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԹՈՒՐՔԻՈՅ

## Էտրէմիտ. — Այվալըգ. — Ֆուճտա. — Միտիլի

[ՊԱՏՄԱԿԱՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ ՄԸ]

*Իդա լերան ստորոտն այգիներով, պտղատու ծառերով եւ Թթենիներով զարդարուն գեղեցիկ ու ընդարձակ դաշտ մը կայ, որ անտառներով շրջապատուած է։ Բնութեան այս շքեղ ծոցին մէջ կը հանգչի Էտրէմիտ քաղաքը, Գալըքէսիրի ճամբուն երկու եզերքը, ձիթենիներու երկար շարքի մը հովանիին տակ։ Ունի 6200 բնակիչ։*

*Պլինիոս կը պատմէ թէ հոն, ուր այժմ կը գտնուի Էտրէմիտ, Բեդասոս անուն քաղաք մը կար, որուն հիմնարկութիւնը Տրովադայի պատերազմէն ալ առաջ է։ Կրեսոսի եղբայրը, Ատրամիս, իր անունը տուաւ անոր։ Այս քաղաք, Հռովմայեցւոց ժամանակէն իսկ, ապահով նաւահանգիստ ու նաւարան ունէր։ Ագչէհիր, Էտրէմիտի միակ նաւահանգիստը, տարեկան մօտ 440,000 Օսմ. ոսկւոյ առեւտուր կ'ընէ, որուն 352,000 ը՝ արտածում եւ 88.000 ը՝ ներածում։ Աւելի հեռուն, ծովեզերքէն երկու քիլոմէդր անդին, կը նշմարուի Քէմէր—Էտրէմիտ, որ ունի 4000 բնակիչ եւ կ'արտածէ խոզկաղին, կաղնեփայտ եւ եղեւնափայտ։*

*Էտրէմիտի ծովածոցէն ելնելով կուգանք Այվալըգ, որուն տարեկան գործառնութիւնը կէս միլիոն Օսմ. ոսկիէն աւելի է։ Կ'արտածէ ձիթապտուղ, ձէթ, օճառ, կաշի, գինի, օղի, կղմինտր, աղիւս, արմտիք եւ քանի մը նուազ կարեւոր բերքեր։ Կը մշակէ նաեւ հերձի (սաքըզ աղաճը), որ անուշ հոտ մը կուտայ օղիին։ Շրջականները կան աղիւսարաններ, եւ ապակիի գործարան մը։ Այվալըք Թուրքերէն կը նշանա-*

կէ սերկեւիլի երկիր, եւ յունարէն անունն ալ, Քեսօնիա, նոյն նշանակութիւնն ունի։ Աքանչելի նաւահանգիստ մ՚է, ուր ամենախոշոր նաւեր իսկ կրնան մտնել։ Բնակչութիւնը 20,000 հոգիի կը հասնի։

Այվալըգի դիմաց կը գտնուի Յունտա կղզեխումբը, որ կը կոչուի նաեւ Մօսխօնիսի (մշկահոտ), կամ Հէքադօնիսի (հարիւր կղզի)։ Այս կղզիներուն եւ Այվալըգի հաղորդակցութիւնք կը կատարուին գետանաւով մը, որ կը կոչուի Բերամադարիա։ Յունտայի կղզիները կ՚արտադրեն արմտիք եւ գինի, զոր իրենք կ՚սպառեն, եւ իւղ ու օճառ, զոր կ՚արտածեն։ Բնակիչներուն շատը ձկնորս են։ Կ՚որսան մանաւանդ պողիպոտ, զոր կը չորցնեն։ [Հոս գրեթէ ամէն նպարավաճառի քով կը ծախուի անոնցմէ։]

Կուզանք Միտիլլի, որ Արքիպեղագոսի ամենէն գեղեցիկ ու կարեւոր կղզիներէն մին է։ Կը գտնուի Եգէական ծովուն վրայ, Էտրէմիտի ծովածոցին բերանը։ Այվալըգի ամէնէն մօտ կէտը, Մանտամատոս, 14 ծովային մղոն հեռու է անկէ։ Հիւսիսէն Թէնէտոս եւ հարաւէն Քիոս 30 մղոն հեռի են Միտիլլիէ, որուն բնակիչներն 110,000 հոգի են, գրեթէ ամենքն ալ Յոյն։ Միտիլլի ունի երկու դեղեցիկ ծովածոցեր, որք երկու բնական գեղեցիկ նաւահանգիստներ կը կազմեն։ Պզտիկը, այսինքն Նէրայի նաւահանգիստը, որ դէպ ի հիւսիս-արեւելք կը գտնուի, 18 քիլոմէտր երկայնութիւն եւ 5 քիլոմէտր լայնութիւն ունի։ Խոշոր նաւերն իսկ կրնան մըտնել ու խարսխել։ Մեծը, Գալօնիա, կղզւոյն կեդրոնը կը գտնուի, 24 քիլոմէտր երկայնութեամբ եւ 10 քիլոմէտր լայնութեամբ։ Բայց մուտքը խափանուած է բազմաթիւ խութերով։ Կղզին կ՚արտադրէ մեծաքանակ ընտիր ցորեն, խաղող, ձիթապտուղ, խողկաղին եւ թուզ, զոր դերձանի վրայ անցընելով կը չորցընեն։ Միտիլլիի մէջ կան 300ի մօտ ձիթարաններ, որոց հարիւրը շոգեշարժ, օճառի գործարաններ, 100 հատի չափ, որք տարին չորս միլիոն օխա օճառ կը շինեն, եւ 10 ի չափ խաղաղորդարաններ, որք 100,000 քիլոկրամ կաշի կը պատրաստեն։ Կան նաեւ շատ տեսակ արջառ եւ տեսակ մը պզտիկ վայրի ձիեր, կարճ, գէր ու զօրաւոր, որոնցմէ շատ կը գործածուին Պոլսոյ մէջ։ Ջուկի ա-

ուտ որս ալ կայ, մանաւանդ աղկեր (սարսկյա պալըղը) եւ սպունգ։ Հողը բերրի է եւ կլիման՝ մեղմ ու առողջ։ Երջանիկ կղզի մը վերջապէս, որ նախախնամութեան բոլոր բարիքներովը օժտուած է եւ որուն ոտխակներն իսկ, կ'ըսէին հին ատենները, աւելի հրապոյրով կ'երգեն քան ուրիշ տեղ։

Միտիլլիի վաճառականութիւնն 1899 ին 660,000 Օսմ. ոսկիի գործառնութիւն ըրած է, որուն 308,000 ը՝ արտածում։ Երկրորդ կարգի բնական նաւահանգիստներն են Սիկրի՝ արեւմտեան կողմը, Բէդրա՝ հիւսիսային կողմը, Լուդրա, Էտի, Այիօ-Ֆուդա, Արադինի, Թէրմի, Մատամանդա՝ արեւելեան կողմը, Գալօդինիոս, Բանանիօդա՝ հիւսիս-արեւմտեան կողմն եւ Սքամիա ու Գավադաս՝ արեւմտեան կողմը։

Միտիլլի նախկին Լեսպոսն է, որ արդէն Պարսիկներուն կը վերաբերէր երբ Քսերքսէս պատերազմ հրատարակեց։ Բիւզանդեան կայսրութեան վախճանին ատեն, 1204 ին, Լեսպոս անցաւ Ֆրանսացիներուն։ 1462 ին երջանկայիշատակ Ֆաթիհ Սուլթան Մէհմէտ գրաւեց զայն Ճենովայի իշխաններուն ձեռքէն։

Լեսպոս անուանի էր իր կիներով եւ բանաստեղծներով։ Որփէոս հոն ծնած էր։

[Իզմիրի նաւահանգստին եւ վաճառականութեան վրայ միւս տետրով։]

# ԳՐԱԳՐԻՆ ՊԱՇՏՕՆԸ

ԿԱՄ

## ԹՂԹԱԿՑԵԼՈՒ ԱՐՈՒԵՍՏԸ

---

[Լայբցիկի (Գերմանիա) Առեւտրական Ակադեմիոյ պաշտօնաթերթին մէջ, որուն յարգելի տնօրէնը, Հէրր Լուդվիկ Հուպերտ, հաճած էր ազնուաբար մեր տրամադրութեան ներքեւ դնել իր օգտակար հրատարակութեան հաւաքածոն, կը գտնենք հետեւեալ յոյժ շահեկան ուսումնասիրութիւնն առեւտրական թղթակցութեան վրայ, որ այնքան անհրաժեշտ է վաճառականի գրագրի մը համար։]

---

*Գրագրի պաշտօնին մեծութիւնը. — Զուիցերիական օրէնքը. — Մաքուր գրին դերը. — Գրի մեքենաներն ու անոնց անպատեհութիւնները. — Թղթատարական քարդեր.*

---

*Անփորձ գրագրի մը համար խիստ դժուար կ'երեւի առեւտրական նամակի մը խմբագրութիւնը, որովհետեւ դպրոցին մէջ նամակագրութեան բոլորովին տարբեր օրէնքներ սովրած է։ Շատ անգամ փորձած եմ առեւտրական նամակներու պայմանադրական ոճն հաշտեցնել լեզուին ներդաշնակութեան եւ իրողութիւններու ճշմարտութեան հետ, բայց ջանքերս ապարդիւն մնացած են միշտ, եւ պարտաւորուած եմ դառնալ ուռուցիկ պարբերութիւններու, նուիրագործուած հասարակ բացատրութիւններու եւ քաղաքավարական անհամ ֆօրմիւլներու։ Սովորութիւնը կամ վարժութիւնը մեծ ազդեցութիւն կ'ունենայ մարդուս վրայ։ Պէտք է սակայն խոստովանիլ թէ պարզ գաղափարներ յայտնելու համար զարդարուն բառերու եւ սեթեւեթեալ պարբերութիւններու գործածութիւնն աններելի իմաստակութիւն մ'է։*

Նամակագրութեան պայմանագրական ոճը միշտ օգտակար չի կրնար ըլլալ, քանի որ առեւտուրի մէջ մարդ մինակ իր հայթայթիչին, յաճախորդին կամ դրամատէրին հետ չի թղթակցիր։ Յաճախ կը պատահի որ վաճառականը՝ մենաշնորհ մը ձեռք բերելու համար՝ կ'ստիպուի թղթակցիլ պաշտօնատուններու հետ, կամ տեղեկագրեր մատուցանել տնտեսական կամ ելմտական խնդիրներու վրայ։ Այս պարագաներուն մէջ, պայմանադրական ոճն անօգուտ մնալով աւելի բարձր ոճի մը պէտքն զգալի կը դառնայ։

* * *

Գրագիր մը՝ երկրին պետական լեզուէն (այսինքն Թուրքերէնէն) եւ իր մայրենի լեզուէն զատ՝ պարտաւոր է ուսանիլ եւրոպական մի քանի լեզուներ։ Զուիցերիոյ մէջ երեք լեզու գիտնալը պարտաւորիչ է այն ամէն երիտասարդի համար որ կ'ուզէ առեւտրական կամ ճարտարարուեստական տան մը եւ կամ պանքայի մը մէջ գրագրի պաշտօն ստանձնել։ Այս օրէնք խիստ օգտակար է եւ գովելի, որովհետեւ հզօրապէս կը նպաստէ երկրին ընդհանուր բարգաւաճման եւ ընկերային յարաբերութեանց զօրացման։

Հիմա քննենք թղթակցելու բուն արուեստը՝ իր արտաքին ձեւին մէջ։ Առեւտրական տան մը գրագիրն աւելի դժուար պաշտօն մը կը կատարէ քան հաշուակալն եւ աւելի փափուկ՝ քան ուղեւոր պաշտօնեան, որովհետեւ անհրաժեշտ կերպով տեղեակ պէտք է ըլլայ վաճառատան բոլոր ներքին գործառնութիւններուն։ Գրագիրը պայծառ ու ճապուկ միտք մ'ունենալու է յաճախորդին պատշաճ ոճը գիտնալու եւ գործածելու համար։ Խնդրանքի ու մատուցումի միջեւ ներդաշնակութիւն հաստատելու կարեւոր այլ դժուար պաշտօնն ունի ան։ Հիմակ որ կատաղի մրցում կայ, գրագիրը պարտաւորուած է կոչում ընել իր մտաւորական բոլոր կարողութիւններուն եւ վաճառատան շահերն հաշտեցնել յաճախորդաց պահանջումներուն հետ։ Աւելորդ է ըսել թէ գործի նամակն ընթեռնլի կերպով գրուելու է անպատճառ։ Բայց մանաւանդ կ'ուզէի պնդել գեղեցի՛կ գրին օգտակարութեան

*վրայ եւ բառերու ու թիւերու զուգաչափ կարգաւորութեան վրայ։ Նամակ մը, որ աչքի հաճոյ կ'երեւի, նպաստաւոր արդիւնք կրնայ ունենալ զայն ղրկող վաճառատան համար։*

* * *

*Գաղափարաց այս կարգին մէջ յիշենք գրի մեքենաները, որք մեծ ծառայութիւն մատուցին եւ իրենց թեթեւ ու արագ տպագրութեամբ առեւտրական կազմակերպութիւնն յեղաշրջեցին։ Սակայն շատեր իրաւամբ կը հակառակին այս նորութեան, որուն գործնական օգտակարութիւնն անվիճելի է եւ որուն ներմուծումը սակայն բնաւ պիտի չնպաստէ նամակագրութեան ոճին բարեփոխման։ Գրագրի մը տեղ, որ կը խորհի եւ իր գրածին պատասխանատու է, կ'ունենանք ճարտար արհեստաւոր մը, բայց նաեւ հասարակ ընդօրինակիչ մը եւ հայելի մը՝ որ իրեն ներկայացուած պատկերը կը ցոլացնէ, — պատկեր մը՝ առանց շրջագիծի, առանց կարկառուն մասերու։ Մեքենայով գրուած նամակները բնաւ չեն նմանիր գրիչով գրուածներուն։ Առաջինները անանուն նկարագիր մ'ունին որ համակրութիւն չի ներշնչեր, մինչ վերջինները ընդհակառակը գրողին անձնաւորութիւնը կը ցոլացնեն եւ ծանօթ դէմքերու յիշատակը կ'արթնցնեն։*

* * *

*Թղթատարական քարդերու գործածութեան մէջ գրագիրը պարտաւոր է մեծ խոհեմութեամբ շարժիլ, եւ գաղտնապահութեան, պատշաճութեան ու քաղաքավարութեան սկզբունքներն ի նկատ առնել։ Դժուար չէ գուշակել թէ ի՛նչ անպատեհութիւններ կրնան ծագիլ թղթատարական քարդերու աննկատ ու անխոհեմ գործածութենէն։*

# ՏԻՊԱՐ ՎԱՃԱՌՈՐԴԸ

## [ԹԷԶԿԵԱՀՅԱՐ]

---

*Գործի մը յաջողութիւնը ձեզմէ կախում ունի, Պ. վաճառո'րդ: Դուք եթէ գէշ վաճառորդ մ'էք, կրնաք քիչ ժամանակուան մէջ կործանել գործ մը: Ռէքլամն յաճախորդը կը տանի խանութ, բայց դո'ւք պիտի գոհացնէք զայն: Խանութին մէջ պիտի աւարտէք, ինչ որ ռէքլամն սկսած է դուրսը:*

*Ամէն բանէ առաջ պէ'տք է գիտնաք ձեր գործին բնութիւնն և նախնական ծանօթութիւններ ունենաք անոր վրայ: Պաշտօննիդ միայն յաճախորդին ուզած ապրանքը ցուցընելուն եւ գին առաջարկելուն մէջ չի' կայանար: Պէտք է գիտնաք վաճառքին յատկութիւնն եւ կարող ըլլաք հասկնալ յաճախորդին կամքն ու ճաշակը:*

*Առտուն կանուխ գործերնուդ գլուխը գտնուեցէ'ք: Ամէն առաւօտ, երբ ներս մտնէք խանութէն, աչքէ անցուցէ'ք ունեցած ապրանքնիդ, շտկեցէ'ք, մաքրեցէ'ք զանոնք եւ անոնց տեղը, տեսակն ու քանակը մտքերնիդ պահեցէ'ք: Շատ անախորժ բան է յաճախորդին բան մը հարցուցած պահուն շուարիլ, մնալ եւ զայն ժամերով սպասցնելէ ետքը չկայ ըսել:*

*Ո'րչափ ալ զբաղած ըլլաք, պէտք չէ որ աչքէ վրիպեցնէք յաճախորդի մը վաճառատունէն ներս մտնելը: Պէտք է մօտենաք անոր կամ գէթ հեռուէն քաղաքավարական մէկ երկու խօսք ուղղէք: Սուր աչքով դիտեցէ'ք յաճախորդն եւ անոր բնութիւնն ուսումնասիրեցէ'ք: Ամէն բանէ առաջ աշխատեցէ'ք որ համակրի ձեզի: Միշտ պատկառանքով վարուեցէ'ք եւ քաղաքավարութեամբ խօսեցէ'ք, առանց խտրութիւն դնելու յաճախորդներու միջեւ: Հաճելի ըրէ'ք ինքզինքնիդ եւ յարգել տուէ'ք: Գիտցէ'ք թէ յաճախորդ մը բնաւ երկրորդ անգամ չերթար հոն, ուր քաղցրութեամբ չեն վարուիր իրեն հետ:*

*Սակարկութեան մէջ կարելի եղածին չափ քիչ խօսեցէ՛ք։ Բնաւ պարապ, անիմաստ խօսք մի՛ հանէք ձեր բերնէն։ Ջանացէ՛ք ազատ ձգել յաճախորդն որ իր գիտցածը խօսի։ Հաւատալ՝ կեղծեցէ՛ք եթէ սուտ ալ խօսի ան։*

*Երբ ապրանք մը պիտի հանէք, սովորութիւն ըրէ՛ք նախ հինները ցուցնել յաճախորդին։ Աչքէ հեռու մի՛ պահէք հին ապրանքները։ Անոնց փաթոյթն ու պիտակները միշտ փոխեցէ՛ք ու մաքուր պահեցէ՛ք։ Հին ապրանքներն ամէն օր իրենց արժէքը մաս մաս կը կորսնցնեն։*

*Ո՛չ թէ աժան, այլ լաւ ապրանք ծախելո՛վ միայն յաճախորդ կը շահիք։ Սակարկութեան մէջ աշխատեցէ՛ք վաճառքին աժնութենէն աւելի յատկութեան վրայ խօսիլ։*

*Լաւ վաճառորդ ըլլալու համար պէտք է լաւ գնորդ մը ըլլաք կամ ունենաք։ Աժան եւ հաշիւով գնուած ապրանքը գրեթէ ծախուած կը համարուի։*

*Ամէն վիճակի մարդ տարբեր պէտքեր ունի։ Նախ աշխատեցէ՛ք այդ պէտքերն ուսումնասիրել եւ ըստ այնմ հոգալ ձեր վաճառատան տեսակը։ Յիշեցէ՛ք միշտ թէ յաճախորդ մը պարապ դուրս հանելը լաւ գաղափար չի՛ տար ձեր ճարտարութեան ու գործունէութեան վրայ։*

Ա. Գ.

[Գերմաներէնէ]

# ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ՕՐԷՆՍԳԻՏՈՒԹԻՒՆ

## ՕՐԻՆԱԿԱՆ ՏՐԱՄԱԴՐՈՒԹԻՒՆՔ

### ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ԹՈՒՂԹԵՐՈՒ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ

[Կայսերական Նաւային վարժարանի ծովային իրաւաբանութեան ուսուցիչ եւ ծանօթ հրապարակագիր Տիրան Էֆ. Երկանեան ազնուաբար խոստացած է մեզ առեւտրական օրէնքներու վրայ ընդարձակ ու շահեկան ծանօթութիւններ տալ յաջորդ տետրերու մէջ։]

*Վաճառականական գործառնութեանց մէջ ամէն օր կը հանդիպինք տեսակ տեսակ մուրհակներու, որք իրենց յատուկ պայմաններուն համաձայն պատրաստուած ըլլալու են։ Շատ անգամ ո եւէ պայմանի մը չյարգուիլը կամ նոյն իսկ բառի մը պակաս կամ աւելի գրուիլն այդ կարգի մուրհակներուն առանձնաշնորհումները կ'ոչնչացնէ եւ սովորական պարզ խոստումի մը կարգը կ'անցընէ։ Ուստի անոնց խմբագրութեան եղանակին վրայ քանի մը խօսք ընել օգտակարութենէ զուրկ չէ։*

*Այսօր հրապարակի վրայ տեսնուած առեւտրական թուղթերն հետեւեալներն են. — Փոխանակագիր, ի հրամանի մուրհակ* (à l'ordre, **Էմրէ մուհարրէր**), *պարզ մուրհակ, բաց մուրհակ* (au porteur, **աչըգ պօնօ կամ համիլինէ մուհարրէր**), *վարկի նամակներ* (lettre de crédit), *վճարման հրամանագրեր* (mandat) *եւայլն։*

## Ա. — Փոխանակագիր

[Նմոյշ]

*Տէրի սաատէթ*, 1 *Հոկտ.* 1900

*Լ. Օսմ.* [50] *էլլի*

*Իշպու [պիրինճի նուսխէ] փօլիչանըն Թարիխինտէն իթի- պարէն օթուզ պիր կիւն միւրուրինտէ Ա... էֆէնտինին էմ- րինէ եալընըզ էլլի ատէտ Օսմանլը լիրասընը [իշպու վէճհ- լէ] Թէէտիյէ պույուրընըզ։ Մէպլաղը մէզպուրը էֆէնտիի մումաիլէյհտէն ախզ էյլէմիշիմ տիր։*

*Բ..., Գ...*

*Իզմիրտէ մուգիմ Թիւճճարտան*

*Դ... էֆէնտիյէ*

*Ինչպէս կը տեսնուի, 1. — Փոխանակագրին ստորագրուած եւ վճարուելիք տեղերը տարբեր ըլլալու են։ Եթէ Պոլսոյ մէջ բնակող մէկը դարձեալ Պոլսոյ մէջ բնակող ուրիշ մէկու մը վրայ փոխանակագիր քաշէ, այդ Թուղթ ըստ օրինի փոխանակագիր չի համարուիր, որովհետեւ փոխանակագիրը տեղէ տեղ վճարմանց դիւրութիւն ըլլալու համար յօրինուած է [*]։ Պէտք է նշանակել 2. — Թուականը, 3. — Վճարելի դրամին քանակը, Թուանշանով եւ գրով, 4. — Այդ դրամին ինչի՛ փոխարէն ըլլալը, 5. — Ե՛րբ եւ ո՛ւր վճարուիլը, 6. — Որո՛ւն վճարելի ըլլալը, 7. —* Ի հրամանի *բառերը* [**եմրինե**], 8. — *Անունն այն անձին որուն վրայ պիտի քաշուի եւ 9. — Քաշողին ստորագրութիւնը։*

*Եթէ այս պայմաններէն մին չգտնուի. զոր օրինակ, փոխանակ «այն ինչին հրամանին վճարեցէ՛ք» ըսելու, «այն ինչին վճարեցէ՛ք» ըսուած ըլլայ, կամ այդ դրամին ինչի փոխարէն ըլլալը նշանակուած չըլլայ, այն ատեն անիկա փոխանակագիր ըլլալէ կը դադրի։ Փակագծի մէջ տեսնուած*

---

[*] Գաղղիական օրէնքն երկու տարի առաջ բարեփոխուելով, այս պայմանը ջնջուած է որով հիմա, ըստ նոր օրէնքի, միեւնոյն տեղւոյ մէջ կարելի է փոխանակագիր քաշել ի Ֆրանսա։

*բառերը՝ պարտաւորիչ չեն, բայց եթէ գրուին, վնաս չեն հասցներ։ Արդէն վաճառականները սովոր են գործածել զանոնք։ Ընդհակառակն երբ տոկոսի պայման մը աւելցուի, փոխանակագիրն իր բոլոր արժէքը կը կորսնցնէ։*

*Ուրեմն փոխանակագիր մը պատրաստելու ատեն պէտք է ի նկատ առնել այս ինն պայմանները, եւ պակաս կամ աւելի բաներ գրելէ զգուշանալ։*

## Բ. — Ի հրամանի մուրհակ

[Նմոյշ]

Վադէ 15 կիւն　　　　　　Լիրայի Օսմանի (50) էլլի

*Պէտէլինի էմթիա օլարագ ախզ էյլէտիկիմ էլլի ատէտ Օսմանլը լիրասընը Թարիխտէն օն պէշ կիւն միրուրինտէ Ն... էֆէնտի էմրինէ թէէտիյէ իթմէկէ մէճպուրըմ։*

*Տէրի սաատէթ* 1 *Հոկտ.* 1900　　　　　　*Ձ... Է...*

*Ինչպէս կը տեսնուի, ի հրամանի մուրհակին մէջ պէտք է գրել* 1. — *Վճարելի դրամին քանակութիւնը,* 2. — *Անունն այն անձին որուն հրամանին պիտի վճարուի,* 3. — *Պայմանաժամը,* 4. — *Փոխարէնը* [*պէտէլ, ճիհէթ*], 5. — *Թուականը, եւ* 6. — *Ստորագրութիւնը։ Նաեւ, ինչպէս ամէն պայմանագրութիւններու, մուրհակներուն մէջ ալ պէտք է նշանակել ստորագրուած քաղաքին անունը։ Այս կարգի մուրհակները, ինչպէս նաեւ փոխանակագիրք, փոխանցումով* [*ճիրօ*] *իբրեւ դրամ ձեռքէ ձեռք կը շրջաբերին։ Եթէ այս պայմաններէն մին պակաս ըլլայ կամ տոկոսի ու գրաւի* [*ռէհն*] *պէս աւելորդ պայման մը գտնուի, թուղթն ի հրամանի մուրհակ ըլլալէ կը դադրի եւ պարզ մուրհակի ձեւ կ՚առնէ։*

## Գ. — Պարզ մուրհակ

[Նմոյշ]

Վադէ 91 կիւն　　　　　　Լիրայի Օսմանի [50] էլլի

*Թ... էֆէնտիտէն քարզէն ալտըղըմ էլլի ատէտ Օսմանլը*

*լիրասընը Թարիխտէն տօքսան պիր կիւն միւրուրինտէ կիւչէչթէի նիզամիսի իլէ պէրապէր քէնտուսինէ թէէտիյէ իթմէկէ մէճպուրըմ։*

*Տէրի սաատէթ*, 1 *Հոկտ.* 1900 *Ժ... Ի...*

*Այս կարգի մուրհակներն ալ վերոյիշեալ պայմաններուն ենթակայ են, սա տարբերութեամբ որ այս թուղթերը միայն որոշեալ անձի մը վճարելու խոստումը կը պարունակեն։ Ասոնք իբր դրամ չեն կրնար շրջաբերիլ։ Որո՛ւն անուան որ գրուած է, միայն անիկա կրնայ մուրհակին փոխարէնը պահանջել։ Այս տեսակ մուրհակներու մէջ կարելի է ամէն տեսակ պայման դնել, ինչպէս տոկոս, գրաւ, եւայլն. կը բաւէ որ օրէնքի դէմ չըլլան։*

## Դ. — Բաց մուրհակ

[Նմոյշ]

*Լիրայի Օսմանի* [50] *Էլլի*

*Նազտէն մէէխուզըմ օլան եալընըզ էլլի ատէտ Օսմանլը լիրասընը Թարիխտէն օն կիւն միւրուրինտէ իշպու սէնէտին համիլինէ թէէտիյէ իտէճէկիմ։*

*Տէրի սաատէթ*, 1 *Հոկտ.* 1900 *Լ... Խ...*

*Բաց մուրհակներու մէջ, ինչպէս կը տեսնուի, անուն չկայ։ Որո՛ւն ձեռքը որ գտնուի, ա՛ն կը համարուի տէրը, եւ փոխարէնը կրնայ պահանջել։ Բայց պէտք է գիտնալ թէ Առեւտրական օրէնքը՝* 5—6 *տարիէ ի վեր՝ իբր վաճառականական մուրհակ չի՛ նկատեր այս կարգի թուղթերը, այլ սովորական մուրհակներու կարգը դասած է, որով անոնցմէ ծագում առած դատերն Առեւտրական դատարանին չեն երթար, այլ Հուգուգի դատարաններուն։ Այս պատճառաւ, սոյն մուրհակներուն արժէքը շատ ինկած է։ Անոնք իբր դրամ չեն կրնար շրջաբերիլ։ Եթէ մէկն այդ տեսակ մուրհակով մը պարտականէն ստակ պահանջել ուզէ, նախ պէտք է ապացուցանէ թէ այդ մուրհակն իրեն տրուած է, ապա թէ ոչ մուրհակին իր ձեռքը գտնուիլը անոր տէրն ըլլալուն ապացոյց չի՛ համարուիր, մինչ առաջ հակառակն էր։*

*Ջէքերու, վարկի նամակներու եւն.ի մասին օրէնքը մասնաւոր տրամադրութիւններ չունի։ Արդէն անոնք պարզ գրութեանց պէս են։*

ՏԻՐԱՆ ՆԻՐԿԱՆԵԱՆ

# ՆՄՈՅՇՆԵՐ
# ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ՆԱՄԱԿՆԵՐՈՒ

---

Կ. Պոլիս, 1/14 Հոկտ. 1900

Միւսիւ Ա...

Մանչեսդըր

Անցեալ ամսոյ 18 թուակիր նամակնիդ առի ։
Թիւ 234 նմոյշէն 55 տուզինա
» 265 » 80 »
» 266 » 32 » փոխկապի յանձնարարութիւն մ'առած եմ 11 շիլինէն ։

Հաճեցէ՛ք այս ապրանքները փութով Պոլիս ղրկել ։

Գնողն ուրիշ գոյներ կ'ուզէ իր տեսակն ամբողջացնելու համար ։

Բարեւներս — Բ. Գ.

---

Ասիթանէ, 14 Հոկտ. 1900

Ա. էֆէնտի

Մանչեսդըր

Շէհրը սապըգըն 18 թարիխլու թահրիրաթը միւթէպէրէնիզ էլէտիմէ վասըլ օլտու ։

Պէնտէնիզէ սիփարըշ օլընան էմթիաի աթիյէի լութֆէն վէ պիլա թէէխիր չէհրիմիզէ իրսալ իթմէնիզ միւսթէրհամ տըր ։
Նօ 234 նիւմունէտէն 55 տուզինա
» 265 » 80 »
» 266 » 32 » քըյմաթ ֆիյ 11 շիլինտէն ։

Ջէշիտլէրին իթմամը իչուն միւշթէրինին սայիր րէնկլէր թալէպ իթտիկի պիլ պէյան արզը խուլուսա իպթիտար իտէրիմ ։

Բ. Գ.

# MODÈLES
## DE
# CORRESPONDANCE COMMERCIALE

---

Cons/ple, le 14 Oct. 1900

Monsieur A.

Manchester

Je possède votre estimée du 18 écoulé.

J'ai une commande pour

55 douzaines de cravates, échantillon 234
80 » » » 265
32 » » » 266 à 11 schellings.

Veuillez expédier de suite les marchandises à Cons/ple.

L'acheteur désire d'autres couleurs pour compléter son assortiment.

Agréez mes salutations empressées.

B. C.

---

Cons/ple 14th Oct. 1900

Mr. A.

Manchester

Yours of the 18th ult°. to hand.

I have an order for

Pattern 234 of 55 dozens
» 265 » 80 »
» 266 » 32 » of ties at 11 shillings.

Be so good as to forward them to Cons/ple at once.

The buyer wants other colors to complete his assortment.

Yours truly.

B. C.

# ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ

---

## ՆՕԹԵՐ

## ԱՅՏԸՆԻ ՈՒ ՊԵՐԿԱՄԱՅԻ ՎՐԱՅ

---

*Այտըն Թուրքիոյ ամէնէն կարեւոր եւ փաճառաշահ վիլայէթներէն մին է։ Մակերեւոյթն է 53,000 քառակուսի քիլոմէդր, որուն 15.000 ը՝ մշակեալ, 5000 ը՝ մշակելի եւ արօտավայր, 6000 ն՝ անտառ եւ 27.000 ը՝ լեռ ու անմշակ հող։ Նահանգին բնակչութիւնն է 1,100,000 հոգի։ Մէն մի քառակուսի քիլոմէդրի համար 26 բնակիչ կ՚իյնայ։ Երկրագործութիւնը շատ ծաղկեալ վիճակ մ՚ունի։ Երկրագործական նորահնար մեքենաներու գործածութիւնը մեծ զարկ տուած է անոր յառաջդիմութեան։ Հողը բերրի է, կլիման՝ ազնուական եւ ջուրն՝ առատ։ Ասոր համար է որ հողին բերքերն առատ են։ Յաջող տարիներու մէջ մինչեւ 6.000,000 Օսմ. ոսկիի հունձք կ՚արտադրէ։ Գլխաւոր բերքն է թարմ եւ չոր խաղող՝ Ցետոյ, կարեւորութեան կարգով, կուզան խողկաղին, ափիոն, չոր թուզ, դեղօրայք [սակամոնի (մահմուտիէ), խէժ եւն.], ձիթապտուղ, ձէթ, բամպակ, ծխախոտ, գարի, ցորեն, կորեկ (տարը), շուշմայ (սուսամ), եգիպտացորեն, բակլայ, մատուտակ (միյան քօքիւ), բուրդ, տոլոն, մորթ, եւն։ Հոս ալ, ինչպէս գրեթէ բոլոր Թուրքիոյ մէջ, հանքերը շատ են։ Դիրէպի գաւառակին մէջ կը շահագործուին զմռնիտի (զըմփարա) քանի մը հանքեր, որոց արտադրութիւնն Անգլիա կը ղրկուի։ Մաքրիի մէջ կը բանին քրօմի եւ մանկանէզի երկու հանքեր, նաեւ ծարրաքարի (ռասթըք թաշը) եւ ածուխի հանքեր՝ Սոմայի շրջակաները։ Նահանգին անտառներէն կը հանուին 60—70,000 խորանարդ մէդր փայտ, որուն կէսը կեղեւ՝ խաղաղորդարանի համար։ Մաքրիի ան-*

*տաներուն մէջ կը գտնուին ստիւրակենիններ [երենիի ընտանիքէն], իսկ միւս անտառներուն մէջ կուենիներ (զաքրան աղաճը), որոնցմէ բեւեկնախէժ կը հանուի։ Ֆօկլիէրիի մէջ բազմաթիւ աղարաններ կային, զորս ձենովացիք միջին դարու մէջ կը շահագործէին։ Հիմա վեց հատ կան։ Բազմաթիւ են նաեւ հանքային ջուրերու աղբիւրները։ Եօթը գետեր կ'ոռոգեն Այտընը, — Պէքիր չայ, Մէտէրէ չայ, Քիւչիւք Մէնտէրէս, Կէտիկ չայ, Պէօյիւք Մէնտէրէս, Տալման չայ եւ Գօձա չայ։ Առաջին նաւահանգիստը, որուն կը հանդիպինք, է Տիքիլի, որ կանոնաւորապէս կապուած է Սօմայի, Գըրքաղաճի եւ Մանիսայի հետ։ Տիքիլի՝ նաւահանգիստն է Պէրկամայի, որուն հիմնարկութեան թուականը անցեալին մթութեանը մէջ կորսուած է։ Նշանաւոր հեղինակ մը կը պատմէ թէ Անտրօմաքի երեք որդիներէն մին, Բերկամոս, իր մօր հետ այս քաղաքն եկաւ եւ իր անունը տուաւ անոր։ 1336 ին Սուլթան Օրխան գրաւեց զայն եւ Օսմանեան կայսրութեան միացուց։ Պէրկամայի խաղաղորդարանները նշանաւոր են եւ ընտիր մագաղաթ կը շինեն։*

# ԺԱՄԱՆՑ

## *Ա. — ՎԱՅՐԿԵՆԱԿԱՆ ՀԱՇԻՒՆԵՐ*

**Առաջին պարագայ.** — *Հարիւրէ վար երկու թիւեր վայրկենապէս բազմապատկելու համար նոյն երկու թիւերուն զատ զատ հարիւրէն ունեցած տարբերութիւնը կը գտնէք, կը գումարէք, արդիւնքն* 100 *էն կը հանէք, մնացորդն* 100*ով կը բազմապատկէք եւ արտադրեալին վրայ կ'աւելցնէք երկու թիւերուն առաջին տարբերութեան արտադրեալը։*

**Օրինակ**. — *94 ը 96 ով բազմապատկելու համար այս երկու թիւերուն* 100 *էն ունեցած տարբերութիւնը կը գտնենք որ է* 6 *եւ* 4, *գումար* 10, *զոր հարիւրէն հանելով կ՚ունենանք* 90 ։ *Այս գումար* 100 *ին հետ բազմապատկելով արտադրեալ* 9000 *ին վրայ կ՚աւելցնենք* 6 *եւ* 4 *ի արտադրեալը*. 24, *եւ կ՚ունենանք* 9024, *որ* 94 *ին եւ* 96 *ին արտադրեալն է*։

**Ամփոփում**. — 100 — 10 = 90 × 100 = 9000 + 24 = 9024 ։

---

**Երկրորդ պարագայ**. — 100 *է վեր երկու թիւեր վայրկենապէս բազմապատկելու համար նոյն մեթոտը գործածելու է քիչ տարբերութեամբ*։

**Օրինակ**. — 103 *ը* 106 *ով պիտի բազմապատկենք*։ *Տարբերութիւններուն, այսինքն* 3 *ին եւ* 6 *ին գումարն* 100 *ին վրայ աւելցնելու է փոխանակ անկէ հանելու*։ *Կ՚ըլլայ* 109, *որուն քով դնելու է* 3 *ին եւ* 6 *ին արտադրեալը* = 10918 ։

---

**Երրորդ պարագայ**. — *Մին* 100 *է վեր եւ միւսը վար երկու թիւեր արագ կերպով կը բազմապատկուին այն ատեն միայն երբ այն թիւերուն տարբերութիւններն հաւասար են իրարու*։ *Այս պարագային մէջ տարբերութեանց արտադրութիւնը* 10,000 *էն* [*հաստատ թիւ*] *կը հանէք եւ կ՚ունենաք երկու թիւերուն արտադրեալը*։

**Օրինակ**. — *Ենթադրենք թէ* 105 *ը* 95 *ով պիտի բազմապատկենք*. *Որովհետեւ տարբերութիւններն հաւասար են, այսինքն երկուքն ալ* 5 *են, անոնց արտադրեալը կը հանենք* 10,000 *էն* — 25 = *եւ կ՚ունենանք* 9975, *որ* 105 *ին եւ* 95*ին արտադրեալն է*։

**Ուրիշ օրինակ**. — 108 × 92 = 10000 — 64 = 9936
109 × 91 = 10000 — 81 = 9919

— *Փորձեցէ՛ք երեք անգամ եւ վայրկենապէս պիտի կատարէք հաշիւը*։